Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ







№ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### Նյութեր զրույցների համար



### Պատասխան ընթերցողների հարցերին



### Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում



### Տեղեկատու բաժին



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 2—52—78:



## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 37-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձը սովետական ժողովուրդը տոնում է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ձեռք բերած աննախընթաց հաջողություններով: Սովետական Միությունը գտնվում է իր ուժերի իսկական ծաղկման և ծավալման ժամանակաշրջանում:

Անշեղ վերելք է ապրում ՍՍՌՄ արդյունաբերությունը: Սոցիալիստական արդյունաբերությունը տարեցտարի հագենում է նորագույն տեխնիկայով, վիթխարի չափերով ավելանում է նրա արտադրանքը, ձեռնարկություններում անընդհատ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը: Արդյունաբերության արտադրանքի ծավալը անցյալ տարի 2,5 անգամ գերազանցեց նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը: 1953 թվականին արտադրվեց

38 միլիոն տոննա պողպատ՝ 2 անգամ ավելի, քան 1940 թվականին։ Նույն ժամանակաշրջանում արդյունահանված է 320 միլիոն տոննա ածուխ՝ 2 անգամ ավելի, քան 1940 թվականին, 52 միլիոն տոննա նավթ՝ 70 տոկոսով ավելի, քան 1940 թվականին, արտադրվել է 133 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա՝ 2,8 անգամ ավելի, քան 1940 թվականին։

Մեր երկրի արդյունաբերության զարգացման տեմպերը շարունակում են անշեղորեն աճել։ 1954 թվականի առաջին կիսամյակում ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1953 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ աճել է 14 տոկոսով։ Գերակատարված է ածխի և նավթի հանույթի, գլանվածքի, էլեկտրաէներգիայի, տրակտորների, գյուղատնտեսական շատ մեքենաների ու ծանր ինդուստրիայի մյուս ճյուղերի արտադրության պլանը։

Ձեռք բերված այս հիանալի հաջողությունները արդյունք են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարության։ Այդ հաջողությունները կրկին անգամ ցույց են տալիս սովետական կարգի անսասան հնարավորու-



թյունները, հզորությունը և նրա անվիճելի գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ։ Կոմունիստական պարտիան այսուհետև էլ ավելի է զարգացնելու ծանր արդյունաբերությունը, քանի որ առանց նրա չի կարելի ապահովել գյուղատնտեսության, թեթև արդյունաբերության և ժողովրդական տնտեսության մնացած ճյուղերի արագ աճը, ամրապնդել մեր երկրի պաշտպանունակությունը։

Տնտեսության սոցիալիստական սիստեմը լայն հնարավորություններ է ստեղծել ժողովրդական տնտեսության մեջ նորագույն տեխնիկայի, սովետական գիտության նվաճումների արմատավորման համար։ Սերտորեն համագործակցելով արտադրության աշխատողների հետ, սովետական գիտնականները անընդհատ կատարելագործում են արտադրության տեխնոլոգիան, ստեղծում են նոր, բարձր արտադրողականություն ունեցող մեքենաներ ու սարքավորումներ, բարձրացնում ժողովրդական տնտեսության տեխնիկական հագեցվածությունը։ Հայրենական մեքենաշինությունը միայն 1953 թվականին ստեղծեց մեքենաների և մեխանիզմների մոտ 700 նոր կարևորագույն տիպեր ու մարկաներ, այդ թվում ստեղծվել-

ցին բարձր արտադրողական սարքավորման ավելի քան հարյուր նոր տիպեր թեթև ու սննդի արդյունաբերության համար։ Նույն ժամանակաշրջանում արտադրվել են 3,8 անգամ ավելի մեքենաներ ու սարքավորումներ, քան նախապատերազմյան 1940 թվականին։ Այժմ Սովետական Միության արդյունաբերական արտադրանքի 70 տոկոսը կազմում է արտադրության միջոցների արտադրությունը։ ՍՍՌՄ 1954 թվականի պետական բյուջեում ժողովրդական տնտեսությանը հատկացված 327 միլիարդ ռուբլուց ծանր արդյունաբերության բաժինը կազմում է 95 միլիարդ ռուբլի։ Սովետական մեքենաշինությունը ընդունակ է արտադրելու ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ բոլոր տեսակի մեքենաներ։ Արդյունաբերության մեջ ժամանակակից առաջավոր տեխնիկայի արմատավորումը ուղեկցվում է արտադրական պրոցեսների ավտոմատացմամբ։ Ստեղծվել են ավտոմատ ցեխեր ու գործարաններ։ Սովետական գիտնականները հաջողությամբ ատոմային էներգիան օգտագործում են կոմունիզմի կառուցման համար, մարդկության բարօրության համար։ Այս տարի ՍՍՌՄ-ում գործարկվեց ատոմային էներգիայով աշխատող առաջին էլեկտրակայանը։



Սոցիալիստական ինդուստրիայի բազայի վրա խոշոր հաջողություններ են ձեռք բերվել տրանսպորտի և կապի աշխատանքների բնագավառներում։

Պարտիան վճռական միջոցներ է ձեռնարկել և ձեռնարկում աշխատավորության նյութական բարեկեցությունը բարձրացնելու ուղղությամբ։ Միայն 1953 թվականի երկրորդ կիսամյակում ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը առաջին կիսամյակի համեմատությամբ աճեց ավելի քան 30 միլիարդ ռուբլով։ Անցյալ տարի կառուցվեց լայն սպառման ապրանքներ արտադրող մոտ 300 նոր ձեռնարկություն։ 1954 թվականի առաջին կիսամյակի ընթացքում պլանից ավելի թողարկվեցին զգալի քանակությամբ ժողովրդական սպառման ապրանքներ։ Այսպես, բամբակե գործվածքների թողարկումը ավելացավ 2,1 անգամ, մաքուր բրդյա գործվածքներինը՝ 2,2 անգամ, նուրբ մահուդյա բրդե գործվածքներինը՝ 3,5 անգամ, կաշվե-կոշկեղենի արտադրությունը՝ 10 տոկոսով և այլն։

Կառուցվում են ժողովրդական սպառման առարկաներ արտադրող բազմաթիվ նոր ձեռնարկություններ և կատարելագործվում է գործող ձեռնարկությունների տեխնիկան։

Առաջիկա երկու տարիների ընթացքում շահագործման է հանձնվելու 1 միլիոն 861 հազար մանող իլիկ և 53,5 հազար գործող հաստոց։ Այս փաստերը վկայում են ժողովրդի նկատմամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հայրական հոգատարության մասին, պարտիայի, կառավարության և ժողովրդի միասնության մասին։

Լենինը դեռևս 1919 թվականին ասել է, որ աշխատանքի արտադրողականությունը, դա, վերջին հաշվով, ամենակարևորն է, ամենագլխավորը նոր հասարակարգի հաղթանակի համար։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը մշտապես գտնվել և գտնվում է մեր պարտիայի ու կառավարության ուշադրության կենտրոնում։

Վերջին 25 տարիների ընթացքում ՍՍՌՄ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 6 անգամ, երկաթուղային տրանսպորտում և շինարարության մեջ՝ 3,5 անգամ, 1954 թվականի առաջին կիսամյակում անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը աճել է՝ արդյունաբերության մեջ՝ 7,5



տոկոսով և շինարարության մեջ՝ 7 տոկոսով։

Նախահոկտեմբերյան այս օրերին երկրով մեկ լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը։ Մրցության մասնակիցների մեծ բանակի շարքերում են բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների ավելի քան 90 տոկոսը։ Մասսայական է դարձել նաև կոլտնտեսային գյուղի աշխատավորների մրցությունը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձը մեր երկրի աշխատավորությունը տոնում է սոցիալիստական գյուղատնտեսության նոր, հզոր վերելքի պայմաններում։ Անշեղորեն կենսագործվում են ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան, Փետրվար-մարտյան և Հունիսյան պլենումների որոշումները։

Ընթացիկ տարին սովետական գյուղի պատմության մեջ մտավ որպես խոպան ու խամ հողերի յուրացման մեծ աշխատանքների տարի։ Կատարելով պարտիայի և կառավարության առաջադրած խնդիրը, մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը ձեռք բերեց լուրջ հաջողություններ։ Հաջողությամբ անցկացվեց գարնանացանը։ Կոլտնտեսությունները և սովխոզները 1954

թվականին 9,5 միլիոն հեկտար ավելի գարնանացան կատարեցին, քան անցյալ տարի։ Մինչև այս տարվա օգոստոս ամիսը ՍՍՌՄ կոլտնտեսությունները և սովխոզները հերկել են 14 միլիոն հեկտար խամ և խոպան հող։ Հենվելով ձեռք բերած հաջողությունների վրա, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը խնդիր դրեցին խամ ու խոպան հողերի վրա կատարվող գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունը 1956 թվականին հասցնել մինչև 28—30 միլիոն հեկտարի։ Սոցիալիստական գյուղատնտեսությունը անընդհատ հագեցվում է առաջավոր տեխնիկայով։ Միայն 1954 թվականի առաջին կիսամյակում գյուղատնտեսությունը ստացել է 92 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 52 հազար բեռնատար ավտոմոբիլ, 18 հազար հացահատիկային կոմբայն, 15 հազար տրակտորային և ինքնագնաց խոտհնձիչ և հսկայական քանակությամբ այլ տեխնիկա։ Այժմ մեր կոլտնտեսությունների և սովխոզների դաշտերում աշխատում են 1 միլիոն 260 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 326 հազար կոմբայն, 9,5 միլիոն գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Ձեռք բերած այս հաջողությունները ցույց են տալիս, թե ինչպիսի



հսկայական ռեզերվներ ունի սոցիալիստական գյուղատնտեսությունը, դրանում ակնառու կերպով դրսևորվում է տնտեսության սոցիալիստական սիստեմի հզոր կենսական ուժը, կոլտնտեսային կարգի ուժը։

Մեր սոցիալիստական գյուղատնտեսության ձեռք բերած վիթխարի հաջողությունների վառ արտացոլումն է հանդիսանում Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը, ուր տեղ են գրավել երկրի ամենաառաջավոր 800 կոլտնտեսություն, 200 մեքենա-տրակտորային և մասնագիտացված կայան, 300 սովխոզ և նույնքան անասնապահական ֆերմա, բազմաթիվ գիտա-հետազոտական հիմնարկներ և հազարավոր առաջավորներ։

Ցուցահանդեսում ներկայացված կոլտնտեսային ֆերմաները կենդանի օրինակ են, թե ինչպես ռացիոնալ կերպով օգտագործելով տեղական պայմանները և հմտորեն կազմակերպելով գործը, կարելի է հասնել հանրային անասնաբուծության մթերատվության բարձր ցուցանիշների։

Ժողովրդական տնտեսության անշեղ վերելքի հիման վրա տարեցտարի աճում է սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը ու կուլտուրան։ Ամենօրյա հո-

կատարումը մասսաների նկատմամբ պարտիայի գերագույն օրենքն է, նրա ծրագրի կարևորագույն մասը։

Սոցիալիստական էկոնոմիկայի հզորության բազմակողմանի զարգացման շնորհիվ ՍՍՌՄ ազգային եկամուտը 1953 թվականին ավելի քան երկու անգամ գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ Զգալի չափով աճել է բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը, ավելացել են կոլտնտեսականների եկամուտները։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը 1954 թվականի ապրիլի 1-ից իրագործեցին պարենային և արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գների նոր՝ թվով յոթերորդ իջեցումը, որը նպաստեց ժողովրդի կենսամակարդակի է՛լ ավելի բարձրացմանը։

Աշխատավորության բարեկեցության աճման հետևանքով բարձրացել է նրանց գնողունակությունը։ Այս տարվա առաջին կիսամյակի ընթացքում պետական ու կոոպերատիվ առևտրի գծով բնակչությանը վաճառվել են ապրանքներ 21 տոկոսով ավելի, քան 1953 թվականի առաջին կիսամյակում, այդ թվում մսամթերքներ 30 տոկոսով ավելի, ձկնամթերքներ՝ 24 տոկոսով, կենդանա-



կան յուղ՝ 28 տոկոսով, կաթ և կաթնամթերք՝ 21 տոկոսով, շաքար՝ 14 տոկոսով, բամբակե գործվածքներ՝ 19 տոկոսով, մետաքսե գործվածքներ՝ 45 տոկոսով, բրդե գործվածքներ՝ 56 տոկոսով, հագուստեղեն՝ 24 տոկոսով, ժամացույցներ՝ 36 տոկոսով, կարի մեքենաներ՝ 31 տոկոսով, ռադիոընդունիչներ՝ ավելի քան 2 անգամ և այլն։

Պարտիան և կառավարությունը մեծ հոգատարություն են ցուցաբերում աշխատավորության բնակարանային պայմանների բարելավման գործում։ Հետպատերազմյան տարիներին քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվել է ավելի քան 183 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ գյուղական վայրերում ավելի քան 4 միլիոն տուն։ Բնակարանային շինարարության մեջ կապիտալ ներդրումների ծավալը 1954 թվականի առաջին կիսամյակում, 1953 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ աճել է 120 տոկոսով։ Ամբողջ երկրում մեծ մասշտաբներով կատարվում է դպրոցական շենքերի, առողջապահական, մանկական հիմնարկների, կինոթատրոնների ու կուլտուր-կենցաղային այլ հիմնարկների շինարարություն։

Կոմունիստական պարտիան և Սովետական

կառավարությունը հաջողությամբ լուծում են բոլոր բանվորներին և գյուղացիներին կուլտուրական և կրթված մարդիկ դարձնելու խնդիրը։ Երկրում անշեղորեն ծավալվում է միջնակարգ կրթությունը, աճում է ԲՈՒՀ-երի և դասընթացների թիվը։ Այժմ ՍՍՌՄ-ում ուսուցման բոլոր ձևերում սովորում է ավելի քան 57 միլիոն մարդ։ Մեր երկրի ժողովուրդները վերջնականապես համոզվել են, որ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ուրիշ շահ չունեն, բացի ժողովրդի շահից։



ՍՍՌՄ ժողովուրդների միասնական ընտանիքում Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատարության շնորհիվ անշեղ վերելք են ապրում Սովետական Հայաստանի արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը և կուլտուրան։ Մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին Հոկտեմբերյան ռևոլյուցիայի տարեդարձը դիմավորում է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ձեռք բերած մեծ հաջողություններով։

Անցյալ տարի ռեսպուբլիկայի արդյունա-



բերության համախառն արտադրանքը նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ աճել է 4,1 անգամ։ Ժամանակակից առաջավոր տեխնիկայի արմատավորման, աշխատատար պրոցեսների մեքենայացման, նորարարական շարժման ծավալման, աշխատավորների նյութական դրության բարելավման հիման վրա անընդհատ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը։ Տարեցտարի զարգանում է էներգետիկ տնտեսությունը։

Սովետական Հայաստանի աշխատավորները 1954 թվականի առաջին կիսամյակում նոր հաջողությունների հասան։ Արդյունաբերության համախառն արտադրանքը այս տարվա առաջին կիսամյակում, 1953 թվականի համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, աճեց 19,4 տոկոսով։ Պլանից ավելի շատ արտադրվել է էլեկտրաէներգիա, պղնձարջասպ, սուպերֆոսֆատ, տրանսֆորմատորներ, գեներատորներ, հիդրոտուրբիններ, կաբել, կոմպրեսորներ։ Ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունները գերակատարել են մետաքսյա գործվածքների, գուլպաների, շաքարի, ծխախոտի, հրուշակեղենի, ձկնեղենի, տնտեսական օճառի և այլ առարկաների թողարկման պլանը։

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության աշխատողները անձնվիրաբար պայքարում են գյուղատնտեսության հետագա շեշտակի վերելքի ուղղությամբ պարտիայի և կառավարության որոշումները կենսագործելու համար։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները և մեքենա-տրակտորային կայանները ընթացիկ տարում ավելի կազմակերպված, սեղմ ժամկետում ու բարձր որակով կատարեցին գարնանացանի աշխատանքները։ Ռեսպուբլիկայում 1954 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, կատարվել է 14 հազար հեկտարով ավելի գարնանացան։ Բամբակենու և շաքարի ճակնդեղի ցանքի պլանը կատարվեց 100 տոկոսով։ Այս տարի ավելի շատ կարտոֆիլ, բանջարեղեն է ցանվել, քան անցյալ տարի։ Առաջին անգամ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 3.325 հեկտար տարածության վրա կարտոֆիլի ու բանջարեղենի ցանքն ու տնկումը կատարեցին քառակուսի-բնային եղանակով։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը հագեցվում է ժամանակակից տեխնիկայով, իսկ մեքենա-տրակտորային կայանները ապահովված են որակյալ կադրերով։ Երևանից և ռեսպուբլիկայի մյուս քաղաքներից կոլտնտեսություններն են մեկնել մեծ թվով գյուղատնտեսության մաս-



նագետներ։ Այժմ Հայաստանի գյուղատնտեսության մեջ աշխատում են ավելի քան 2.505 ագրոնոմ, զոոտեխնիկ, անասնաբույժ և ինժեներ։

Ժողովրդական տնտեսության վերելքի հիման վրա բարելավվում է Սովետական Հայաստանի աշխատավորության բարեկեցությունը, զարգանում է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, արվեստն ու գրականությունը։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում շահագործման հանձնվեց մոտ 50 տոկոսով ավելի բնակելի տարածություն, քան անցյալ տարի նույն ժամանակամիջոցում։ Տարեցտարի բարելավվում է աշխատավորության կուլտուր-մասսայական և բուժսպասարկման գործը։ Հաջողությամբ իրագործվում է ընդհանուր, յոթնամյա պարտադիր ուսուցումը։ Ռեսպուբլիկայի յոթնամյա, միջնակարգ, բաներիտ և գյուղերիտ դպրոցներում այժմ սովորում են 315 հազար հոգի։ Բարձրագույն ուսումնական հաստատությունները այս տարի երկրին տվեցին 1.758 ուսուցիչ, 361 ինժեներ, 164 բժիշկ, 202 ագրոնոմ, 98 անասնաբույժ, 87 զոոտեխնիկ, 54 տնտեսագետ։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի 37-րդ տարեդարձը ժողովրդա-

կան դեմոկրատիայի երկրները դիմավորում են էկոնոմիկայի և կուլտուրական շինարարության ասպարեզում ձեռք բերած խոշոր հաջողություններով։

Սոցիալիզմի և դեմոկրատիայի լագերի հետ միասին, ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը վերջերս նշեց Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ստեղծման հինգերորդ տարեդարձը։ Ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակի և այն հաջողությունների շնորհիվ, որոնք անցած հինգ տարվա ընթացքում ձեռք են բերված նոր կյանքի կառուցման գործում, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան դարձավ ազատագրական պայքարի հզոր գործոնը։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան համաշխարհային ասպարեզ դուրս եկավ որպես մեծ տերություն և դեմոկրատիայի ու խաղաղության մեծ լագերի պետությունների հետ միասին հաջողությամբ պայքարում է միջազգային լարվածությունը մեղմացնելու, ամբողջ աշխարհում կայուն խաղաղություն հաստատելու համար։ Չին ժողովրդի պատմական նվաճումները ամրապնդվում են Ժողովրդական ներկայացուցիչների համաչինական ժողովի՝ օրերս ընդունած Կոնստիտուցիայով, որը հանդիսավոր կերպով հռչակեց Չինաստանում սոցիալիս-



տական հասարակարգ կառուցելու սկզբունքները։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում հաջողությամբ առաջ է տարվում սոցիալիզմի հիմքերի կառուցումը։ Արդյունաբերության մեջ սոցիալիստական սեկտորը 1952 թվականին կազմում էր Լեհաստանում՝ 99,6 տոկոս, Չեխոսլովակիայում՝ 99, Հունգարիայում՝ 90, Ռումինիայում՝ 96,5, Բուլղարիայում՝ 99 և Ալբանիայում՝ 99 տոկոս։ Այդ երկրներում արդյունաբերության արտադրանքը 1953 թվականին 207 տոկոսով գերազանցեց նախապատերազմյան 1937 թվականի մակարդակը։ Կենտրոնական և Հարավարևելյան Եվրոպայի ժողովրդա-դեմոկրատական երկրները իրենց զարգացմամբ առաջ են անցել Եվրոպայի ինդուստրիալ խոշոր կապիտալիստական պետություններից։ Չեխոսլովակիան այժմ բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի չափով գերազանցում է Ֆրանսիային, Բելգիային, Հոլանդիային և մոտ երեք անգամ Իտալիային։ Նա ավելի շատ պողպատ է արտադրում, քան Անգլիան, Շվեդիան և Ֆրանսիան։ Էլեկտրաէներգիայի արտադրությամբ Չեխոսլովակիան գերազանցում է Իտալիային և Ֆրանսիային։ Կոմունիստական





և բանվորական պարտիաները իրականացնում են գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման պլանը, զարգացնում են կուլտուրան, գիտությունը և արվեստը։

Հենվելով Սովետական Միության օգնության վրա, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աշխատավորները ստեղծեցին մետալուրգիական արդյունաբերություն, զարգացրին մեքենաշինությունը, նավաշինությունը և ծանր ինդուստրիայի մյուս ճյուղերը։ Նոր կյանքի կառուցման գործում ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորության համար մեծագույն օրինակ և ոգեշնչման անսպառ աղբյուր է Սովետական Միության պատմական մեծ փորձը և նրա անշահախնդիր օգնությունը։ Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և ժողովրդա-դեմոկրատական երկրների անսասան բարեկամությունը անհաղթահարելի ուժ է և հանդիսանում է ամբողջ աշխարհում խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարի հզոր պատվարը։



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի տարեդարձը սովետական ժողովուրդը նշում է մեր Հայրենիքի մի-



ջազգային հեղինակության անչափ աճման, մյուս երկրների աշխատավորների հետ եղբայրական կապերի հաստատման, խաղաղության և դեմոկրատիայի համար մղվող պայքարում նոր հաջողությունների պայմաններում։

Սովետական Միությունը վարում է ժողովուրդների միջև խաղաղության և բարեկամության հետևողական քաղաքականություն։ Սովետական կառավարության արտաքին խաղաղասիրական քաղաքականությունը հենվում է մեր երկրի հզորության վրա, նա բխում է աշխարհի բոլոր ժողովուրդների կենսական շահերից։ Հարյուր միլիոնավոր մարդիկ աշխարհի բոլոր կողմերում հավանություն են տալիս Սովետական կառավարության իմաստուն խաղաղասիրական քաղաքականությանը։

Խաղաղության համար ժողովուրդների նվիրական ձգտումը դարձել է մեր ժամանակի հզոր շարժիչ ուժը։ Օրըստօրե գնալով ավելի լայնանում և ամրապնդվում է խաղաղության կողմնակիցների շարժումը, նոր հաղթանակներ ձեռք բերում իմպերիալիստական ագրեսիայի, պատերազմի հրձիգների դեմ։

Սովետական Միությունը հետևողականորեն պայքարում է խաղաղության և ժողո-

վուրդների անվտանգության համար։ Նա հանդես է գալիս Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության ապահովման կոնկրետ առաջարկներով, որոնց իրագործումը հնարավորություն կտար կանխելու ընդհարումներն ու կոնֆլիկտները եվրոպական երկրների միջև և կզարգացներ նրանց միջազգային քաղաքական ու տնտեսական համագործակցությունը։

Կոլեկտիվ անվտանգության ապահովման հարցում Սովետական Միությունը ելնում է տարբեր հասարակական կարգ ունեցող պետությունների գոյակցության հնարավորության ճանաչումից, միջազգային այնպիսի համագործակցության անհրաժեշտությունից, որը հենվում է եվրոպական բոլոր պետությունների կոլեկտիվ ջանքերի վրա, և որ համաեվրոպական կոլեկտիվ անվտանգության այդպիսի սիստեմի ստեղծումը զգալիորեն կհեշտացներ գերմանական պրոբլեմի կարգավորումը, կօգներ միավորելու Գերմանիան որպես խաղաղասեր, միասնական, անկախ և դեմոկրատական պետություն։

Միջազգային հարաբերություններում լարվածությունը մեղմացնելու նպատակով, Սովետական Միությունը միշտ հանդես է եկել և հանդես է գալիս ատոմային ու մասսայա-



կան ոչնչացման զենքի այլ տեսակները արգելելու և սպառազինությունները կրճատելու համար։ Մեր երկիրը աշխարհում առաջինը գտավ խաղաղ նպատակներով ատոմային էներգիայի գործնական կիրառումը։ Ատոմային պրոբլեմի շուրջը սովետա-ամերիկյան բանակցությունների վերաբերյալ վերջերս հրապարակված փաստաթղթերը մեկ անգամ ևս ամբողջ աշխարհին ցույց տվեցին, որ ՍՍՌՄ-ը ոչ թե խոսքով, այլ գործով ձգտում է հասնել միջազգային համագործակցության՝ բոլոր երկրների ժողովուրդների կենսական շահերը շոշափող կարևորագույն պրոբլեմների շուրջը։

Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների ձեռք բերած հաջողությունները կատաղեցնում են ամերիկյան իմպերիալիստներին։ Նրանք խելացնոր պլաններ են մշակում խաղաղության և սոցիալիզմի լագերի երկրների դեմ։ Ամերիկյան կառավարող շրջանները, որոնք երազում են համաշխարհային տիրապետության մասին, միջամտում են մյուս երկրների ներքին գործերին, անց են կացնում նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստման քաղաքականություն։ Նրանք վերականգնում են գերմանական և յապոնա-

կան միլիտարիզմը, ընդարձակում են ագրեսիվ բլոկներ և ռազմական բազաներ ստեղծելու ցանցը։ Ամերիկյան ագրեսորները Արևմտյան Գերմանիան վերածում են Եվրոպայում նոր պատերազմի նախապատրաստման գլխավոր պլացդարմի։

Աշխարհի ժողովուրդները չեն ցանկանում պատերազմի աղետների կրկնություն։ Նրանք հաստատակամորեն պայքարում են խաղաղության ու անվտանգության ամրապնդման համար։ Ժողովուրդների կամքը անհաղթահարելի է, և նրանք, ովքեր հաշվի չեն առնում ժողովուրդների կամքը, հաշվի չեն առնում ազատության ու անկախության նրանց ձգտումները, անպայման պարտություն կկրեն։ Սովետական Միության, ժողովրդական դեմոկրատիայի երկրների խոշոր հաղթանակը ռեակցիայի ուժերի դեմ հանդիսացավ պատերազմական գործողությունների դադարեցումը Կորեայում և Վյետնամում։

Խաղաղության բոլոր բարեկամները ամբողջ աշխարհում հանդես են բերում բարձր զգոնություն, հետևում են պատերազմի հրձիգների մեքենայություններին և նրանց հակադրում են խաղաղությունն ու միջազգային անվտանգությունն ամրապնդելու իրենց անհողդողդ կամքը։

## ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 37-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Շուտով մեր մեծ երկրի աշխատավորները և նրանց հետ միասին ամբողջ աշխարհի ազատասեր ժողովուրդները տոնելու են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձը։

Ինչպես միշտ, այնպես էլ այս տարի սովետական ժողովուրդը վիթխարի հաջողություններով է դիմավորում փառապանծ տոնը։ Հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ Սովետական Միությունը չտեսնված հաջողությունների է հասել արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման բնագավառում։ Մեծ չափերով բարելավվել է և է՛լ ավելի կբարելավվի աշխատավորների նյութական բարեկեցությունը։

Ի պատասխան աշխատավորների նյութական և կուլտուրական աճող պահանջմունքները առավելագույն չափով բավարարելու վերաբերյալ պարտիայի ու կառա-

վարության հայրական հոգատարության, սովետական մարդիկ ուժ ու եռանդ չեն խնայում սիրելի Հայրենիքի ժողովրդական տնտեսության զարգացման ու բարգավաճման համար։ Ամեն օր մեր Երկրի բազմահազար ձեռնարկություններից, հանքահորերից, կոլտնտեսություններից, սովխոզներից ուրախալի լուրեր են ստացվում տարեկան պլանները գերազանց ցուցանիշներով կատարելու մասին։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձը աշխատանքային նոր հաջողություններով են դիմավորում նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ Մտնելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ, նրանք պատվով են կատարում ստանձնած պարտավորությունները։ Բազմաթիվ գործարաններ ու ֆաբրիկաներ ոչ միայն կատարում ու գերակատարում են տարեկան արտադրական պլանները, այլև տնտեսում են մեծ քանակությամբ հումք, էլեկտրաէներգիա, վառելանյութ, անընդհատ բարձրացնում են թողարկվող արտադրանքի որակը։

Նախատոնական այս օրերին աշխատանքային հիանալի արդյունքների է հասել



Երևանի էլեկտրալուսավորման արմատուրայի գործարանը։ Գործարանի կոլեկտիվն ամեն օր նոր հաջողություններով է նշանավորում Մեծ Հոկտեմբերի 37-րդ տարեդարձը։ Ժամկետից երեք ամիս շուտ կատարված է համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը։ Միաժամանակ արտադրանքի ինքնարժեքը, նախորդ տարվա համեմատությամբ իջել է 16,5 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 18 տոկոսով։ Մեծ չափերով ավելացել է արտադրանքի թողարկումը։ Գործարանի կոլեկտիվը միայն այս տարի յուրացրել է էլեկտրալուսավորման արմատուրայի 10 նոր տեսակի արտադրությունը։

Տարեկան արտադրական պլանները բարձր ցուցանիշներով է կատարել նաև Երևանի Դերմատին-մոմլաթի ֆաբրիկայի կոլեկտիվը։ Այստեղ նույնպես աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերված աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու գործում։ Ի պատիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձի, ֆաբրիկայի կոլեկտիվը պարտավորվել է պլանից դուրս երկրին տալ հարյուր հազար մետր դերմատին։

Աշխատանքային խոշոր հաջողությունների են հասել Լենինականի, Կիրովականի, Ղափանի և ռեսպուբլիկայի մյուս քաղաքների ու շրջանների արտադրական ձեռնարկությունները։

Ծավալելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը, խելացիորեն օգտագործելով ներքին հնարավորությունները, Լենինականի Մանարան ֆաբրիկայի կոլեկտիվը գերակատարել է անցած ամսի և հոկտեմբերի առաջին 15-օրյակի պլանները։ Մանածագործները միաժամանակ պարտավորվել են արտադրական պլանները գերակատարելու հետ միասին տնտեսել 40 տոննա բամբակ, 250 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և մեծ քանակությամբ օժանդակ նյութեր։ Լենինականի շոգեքարշային, վագոնային դեպոների, մեխանիկական ու հացի գործարանների և մի շարք այլ ձեռնարկությունների ու արտելների կոլեկտիվներ նույնպես նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության շնորհիվ լուրջ հաջողությունների են հասել։

Համաժողովրդական մեծ տոնը՝ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձը աշխատանքային նոր հաջողություններով են դիմավորում Կիրովականի բազմաթիվ ձեռ-



նարկություններ, ինչպես, օրինակ, Ալ. Մյասնիկյանի անվան Քիմիական կոմբինատը, Մեքենաշինական գործարանը և մի շարք այլ արտադրական օբյեկտներ, որոնք անընդհատ ավելացնում են արտադրանքի թողարկումը և բարելավում նրա որակը։

Նախատոնական այս օրերին խոշոր աշխատանք է կատարվում նաև սոցիալիստական գյուղատնտեսության ֆրոնտում։ Ինչպես Սովետական Միության եղբայրական մյուս ռեսպուբլիկաների, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային կայանները, կոլտնտեսություններն ու սովխոզները զինված են ժամանակակից սովետական առաջավոր տեխնիկայով։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորները, մեքենա-տրակտորային կայանների մեխանիզատորները և սովխոզների աշխատողները ամեն կերպ ձգտում են օրինակելի կերպով կատարել աշնան գյուղատնտեսական աշխատանքները, պատվով կատարել իրենց պարտքը երկրի առջև։ Հոկտեմբերի 10-ին ռեսպուբլիկան կատարեց խաղողի հանձնման տարեկան պետական պլանը, կատարված է նաև պետությանը միս, կաթ, բուրդ հանձնելու տարեկան պլանը։ Շուտով կկատարվի պետությանը բամբակ հանձ-

նելու տարեկան պլանը։ Մի շարք շրջաններ, ինչպես, օրինակ, Արտաշատի, Վեդիի, Հոկտեմբերյանի, Էջմիածնի, Շահումյանի շրջանները ոչ միայն կատարել, այլև գերակատարել են խաղողի հանձնման տարեկան պլանը։

Այժմ, երբ բուռն թափով ծավալվում է նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը, մեր ագիտատորների առջև լուրջ և պատասխանատու խնդիր է դրված. հասնել այն բանին, որ նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը դառնա ավելի նպատակասլաց և ավելի արդյունավետ։ Գլխավորն այն է, որ բոլոր մրցողներն անթերի կատարեն ստանձնած պարտավորությունները։ Դրա համար անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր ագիտատոր հանգամանորեն ուսումնասիրի առաջավորների աշխատանքի դրական փորձը, այն սիստեմատիկաբար մասսայականացնի աշխատավորության լայն շրջանում և հետևի, որ առաջավոր փորձը ժամանակին և առանց ձգձգումների արմատավորվի արտադրության մեջ։ Չի կարելի ամեն ինչ պատկերացնել հեշտ ու հանգիստ, թե իբր ստանձնած պարտավորությունները կարելի է կատարել առանց դժվարությունների



հանդիպելու։ Ընդհակառակը, նախահոկտեմբերյան սոցմրցությամբ ստանձնած պարտավորություններն ունեն մոբիլիզացնող նշանակություն և այն լրիվին կատարելու համար քիչ ջանքեր չեն պահանջվի։ Ուստի անհրաժեշտ է, որ ագիտատորը ուշի-ուշով հետևի սոցմրցության ընթացքին, ամեն օր հստակ պատկերացում ունենա, թե ով, ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունը, ո՞ւմ պետք է խրախուսել լավ աշխատանքի համար և ո՞ւմ օգնել, որպեսզի նա հասնի առաջավորներին։

Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության ընթացքում առաջավոր փորձը տարածելու և արմատավորելու հետ միասին, խիստ անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել հումքի, նյութեղենի, էլեկտրաէներգիայի խնայողություն կատարելու վրա, հիշելով, որ խնայողության ռեժիմը ժողովրդական տնտեսության հետագա վերելքի կարևորագույն լծակն է։ Ագիտատորը օգտագործելով գործնական փաստեր հենց տեղական կյանքից, ունկնդիրներին պետք է մանրամասնորեն բացատրի, որ որքան ավելի լրիվ ու ռացիոնալ կերպով օգտագործվեն արտադրական ռեսուրսները, որքան խնայողաբար

վարենք մեր տնտեսությունը, այնքան ավելի մեծ հաջողությունների կհասնենք ժողովըրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման և ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման գործում։

Ձեռք բերած հաջողությունների համար մասսայական խրախուսանքի արժանացնելով սոցմրցության առաջավորներին, ագիտատորը իր զրույցի ընթացքում պետք է բացահայտի նաև այն թերությունները, որոնց պատճառով ոչ խնայողաբար են ծախսվում հումքը, վառելիքը, էլեկտրաէներգիան և մյուս նյութական արժեքները։

Նախահոկտեմբերյան այս օրերին կարևորագույն խնդիր է, որ ագիտատորները ունկնդիրների ուշադրությունը բևեռեն արտադրանքի որակի բարելավման հարցերի վրա, որպեսզի մրցության բոլոր մասնակիցները կատարելով ստանձնած պարտավորությունները, երկրին տան ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք։

Մեծ Հոկտեմբերի 37-րդ տարեդարձը արժանավայել կերպով նշանավորելու համար խոշոր նշանակություն ունի սոցմրցության արդյունքները պարբերաբար ամփոփելը։ Դա



հնարավորություն կտա տվյալ գործարանի, կոլտնտեսության, սովխոզի, մեքենա-տրակտորային կայանի աշխատողներին ժամանակին տեղյակ պահել սոցմրցության ընթացքին և մանավանդ այն առաջնահերթ խնդիրներին, որ առաջադրվում են պարտիայի և կառավարության կողմից։

Մոտենում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձը։ Ռեսպուբլիկայի աշխատավորները կաշխատեն ավելի եռանդագին, որպեսզի պատվով կատարեն սոցմրցությամբ ստանձնած բոլոր պարտավորությունները և աշխատանքային նոր հաջողություններով նշանավորեն Մեծ Հոկտեմբերի փառապանծ տոնը։

---

# ԱՄԵՐԻԿՅԱՆ ՄՈՆՈՊՈԼԻԱՆԵՐԻ ԱՐՇԱՎԸ ԺՈՂՈՎՐԴԻ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԻ ԴԵՄ

Պատասխանում ենք Ղափանի շրջանի Շիշկերտ գյուղի ագիտատոր Վ. Վարդանյանի հարցին:

Ամերիկայի Միացյալ Նահանգների ռեակցիոն կառավարողները բոլոր ուղիներով պատրաստվում են ագրեսիվ պատերազմի՝ ընդդեմ խաղաղասեր ժողովուրդների, ընդդեմ ՍՍՌՄ-ի և ժողովրդա-դեմոկրատական երկրների: Այդ է պատճառը, որ նրանք տենդորեն ֆաշիզացնում են երկրի ամբողջ կյանքը, որն առաջին հերթին արտահայտվում է երկրում տեռորիստական ռեժիմի հաստատման մեջ:

Ֆաշիզացվում է ԱՄՆ-ի ամբողջ պետական ապարատը, կուլտուրան, արվեստը, դպրոցը, այն ամենը, ինչ որ մոնոպոլիաները կարող են ծառայեցնել իրենց ագրեսիվ նպատակներին:



Պետական ապարատի ֆաշիզացման պրոցեսից դուրս չի մնացել նաև ԱՄՆ-ի կոնգրեսը, որի կազմում տեղ են գտել մոնոպոլիստական կապիտալի կառկառուն ներկայացուցիչները, մոլի ռեակցիոններները, պատերազմի հրձիգները, դեմոկրատիայի ոխերիմ թշնամիները:

Կոնգրեսում տեղ գտած Ուոլ-ստրիտի ծառաները՝ կոնգրեսմեններն են, որ «օրինականացնում» են իրենց տերերի հակադեմոկրատական, հակակոնստիտուցիոն, ագրեսիվ գործողությունները:

Այդ կոնգրեսմեններն են, որ առաջ են քաշում ամեն կարգի «օրինագծեր»՝ ուղղված ժողովրդական լայն մասսաների կենսական շահերի ու իրավունքների դեմ և հենց այդ «օրինագծերի» հեղինակների անուններով էլ կոչվում են ԱՄՆ-ի կոնգրեսի ընդունած «օրենքները»:

Ժողովուրդների իրավունքների դեմ ֆաշիստական եղանակով հարձակումը ԱՄՆ-ում իր սկիզբն առնում է դեռևս նախապատերազմյան շրջանից:

1940 թվականին ներկայացուցիչների պալատի անդամ Հովարդ Սմիթի նախաձեռնությամբ ԱՄՆ-ի կոնգրեսը օրենք ընդունեց

*ուղղված բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության ու առաջադիմորեն մտածող բոլոր ամերիկացիների դեմ։ Այդ օրենքը կոչվեց Սմիթի անունով, և հասարակության գնահատմամբ անվանվեց օրենք «մտքերի վրա վերահսկելու» մասին։ Սմիթի օրենքը մեծ մասշտաբով գործածության մեջ դրվեց սկսած 1948 թվականից՝ կապված ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության աշխուժացման հետ։*

*Սմիթի օրենքը ԱՄՆ-ի կառավարությանը իրավունք է տալիս բանտ նետել բանվորական կազմակերպության ամեն մի գործչի, այն պատրվակով, որ նա քարոզում է կամ թե մտադրվում է քարոզել կառավարության տապալումը «ուժի կամ բռնության օգնությամբ»։*

*Համաշխարհային տիրապետության ձգտող ամերիկյան մոնոպոլիաների նոր ուժով հարձակումը ուղղված է առաջին հերթին ԱՄՆ-ի բազմամիլիոն բանվոր դասակարգի, նրա պարտիայի ու կազմակերպությունների դեմ։*

*Բանվոր դասակարգի իրավունքների դեմ կիրառվող հարձակումների միջոցներից մեկն էլ ԱՄՆ-ի ռեակցիոն, ֆաշիստական օրենս-*



*դրությունն է։ Այդ օրենքներից է Տաֆտ Հարտլիի հակաբանվորական օրենքը, որն ընդունվել է 1947 թվականին և որը սահմանել է ոստիկանության ու ձեռնարկատերերի բիրտ կամայականություն այն պրոֆմիությունների նկատմամբ, որոնք պաշտպանում են բանվորների շահերն ու պահանջները։ Տաֆտ Հարտլիի ֆաշիստական օրենքը պրոֆմիություններին զրկում է կոլեկտիվ պայմանագրեր կնքելու իրավունքից, եթե նրանց ղեկավարներին կասկածում են «կոմունիստական տրամադրությունների» մեջ։ Այդ օրենքը արգելում է համերաշխության գործադուլները, պահանջում է հրապարակել պրոֆմիությունների գործունեության վերաբերյալ հաշվետվությունները, պրոֆմիություններին արգելում է գործադուլկներին և հիվանդներին օգնելու համար ֆոնդեր ստեղծել, պրոֆմիությունների ղեկավարներից պահանջում է երդում տալ, որ իրենք կոմունիստներ չեն։ Տաֆտ Հարտլիի օրենքը 15 միլիոն կազմակերպված բանվորներին զրկել է բոլոր իրավունքներից։*

*Ամերիկյան մոնոպոլիաները Տաֆտ Հարտլիի ֆաշիստական օրենքն ընդունել տալու համար ծախսել են մոտ 100 միլիոն դոլար։*

Տաֆտ Հարտլիի օրենքի ընդունմանը ԱՄՆ-ի նահանգներում հաջորդեց հակաբանվորական օրենքների հրապարակումը, որոնք աչքի են ընկնում իրենց ռեակցիոն, ֆաշիստական բնույթով։ Բավական է ասել, որ Միսիսիպի նահանգում ընդունված հակաբանվորական օրենքը «գործադուլների դրդիչների» համար սահմանել է երկար ժամկետով բանտարկություն և անգամ մահապատիժ։

ԱՄՆ-ում ռեակցիայի սանձարձակության մասին է խոսում դեռ 1947 թվականի մարտին պրեզիդենտ Տրումենի հրապարակած օրենքը պետական ծառայողների լոյալությունը ստուգելու մասին, որն անմիջականորեն ուղղված է բանվոր դասակարգի ավանգարդի՝ կոմունիստական պարտիայի, ինչպես նաև առաջադիմորեն մտածող յուրաքանչյուր ամերիկացու դեմ։

Ամերիկյան գիշատիչ իմպերիալիզմի կողմից գործադրվող այդ տեռորիստական միջոցները բոլորովին էլ չթուլացրին բանվորական շարժումը և խաղաղության ու դեմոկրատիայի համար մղվող պայքարը։ Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ ԱՄՆ-ի բանվոր դասակարգը և աշխատավորական լայն մասսաները ռեակցիայի սան-



ձարձակություններին պատասխանում են իրենց կազմակերպվածության ուժեղացմամբ, գործադուլային պայքարի աճմամբ և շարքերի միասնության ամրապնդմամբ։

Գազազած ամերիկյան իմպերիալիզմը առավելագույն շահույթների մոլուցքով տարված, հակադեմոկրատական նոր քայլերի է դիմում՝ աշխատավորությանը ամեն կարգի իրավունքներից և ազատություններից զրկելու համար։ Այդ նպատակին էր ուղղված ԱՄՆ-ի կոնգրեսի կողմից 1950 թվականի սեպտեմբերին ֆաշիստական օրինագծի ընդունումը, որով փաստորեն կոմունիստական պարտիան և առաջադեմ բոլոր կազմակերպությունները օրենքից դուրս էին հայտարարվում։

«Ներքին անվտանգության» վերաբերյալ այդ վերին աստիճանի ռեակցիոն օրենքը ընդունվեց կոնգրեսմեններ Մակկարենի և մինչ այդ Մունդտի, Նիկսոնի, Ֆերգյուսոնի, Վուդի և այլ ծայրահեղ ռեակցիոներների կողմից առաջարկված օրինագծերի հիման վրա և կոչվեց Մակկարենի օրենք։ Այդ օրենքով սահմանվեց, որ բոլոր կոմունիստները պետք է «անհապաղ գրանցվեն», և կառավարության իրավունք վերապահվեց պատերազմի և «արտակարգ հանգամանքների»

դեպքում կատարել մասսայական ձերբակալություններ և առանց դատի համակենտրոնացման ճամբարները նետել խաղաղության մարտիկներին ու առաջադիմորեն մտածողներին։ Մակկարենի օրենքը թույլատրում է առանց որևէ դատաքննության,. միայն «գաղտնի ինֆորմացիայի», այսինքն, գաղտնի ոստիկանության մատնության հիման վրա հետապնդել ամեն մի ամերիկացու։

Բնորոշ է այն հանգամանքը, որ ԱՄՆ-ի մոնոպոլիստական շրջաններն իրենց ֆաշիստական, ամենառեակցիոն, ագրեսիվ գործունեությունը ամեն կերպ կամենում են օրինականացնել կոնգրեսի միջոցով, որը հլու հնազանդորեն ծառայում է իր տերերին։

Մակկարենի օրենքին հետևում է 1952 թվականի դեկտեմբերին ուժի մեջ մտած «ներգաղթի և նատուրալիզացիայի» մասին ռասիստական օրենքը, որը կոչվում է նրա հեղինակների՝ Մակկարենի և Ուոլտերի անունով։ Այդ օրենքը մոտ 14 միլիոն վտարանդի բանվորների, որոնք ԱՄՆ-ի քաղաքացիներ են կամ քաղաքացիներ չեն, դնում է իրավազուրկ վիճակում։ Այդ բանվորներից յուրաքանչյուրի գլխին կախված է բանտարկության և ընտանիքով արտաքսվելու վտանգը։



Ռեսպուբլիկականների իշխանության գլուխ անցնելու կապակցությամբ ԱՄՆ-ում ուժեղանում է ներքին կյանքի բոլոր ոլորտների ֆաշիզացիան, որին համապատասխանում է արտաքին քաղաքականության բնույթի ավելի ագրեսիվ դառնալը։

Մինչև վերջին ժամանակներս առաջադեմ մարդկանց նկատմամբ դատա-ոստիկանական հետապնդումների համար իրավաբանական հիմք էր ծառայում, հիմնականում, Սմիթի օրենքը, որի խախտման մեջ 1949—1954 թ. թ. մեղադրվել են ԱՄՆ-ի կոմունիստական պարտիայի 114 գործիչներ։

Ֆաշիստական այդ օրենքներով ամերիկյան մոնոպոլիաները ձգտում են թուլացնել կամ բոլորովին վերացնել բանվորական կազմակերպությունների քաղաքական գործունեությունը, ամբողջ բանվորական շարժման նկատմամբ սահմանել կառավարության վերահսկողությունը, բանվոր դասակարգին զրկել ինքնուրույն մտածելուց ու գործելուց։ Այդ մասին է վկայում թեկուզ գործադուլային շարժման աճը ԱՄՆ-ում։ Միջնորդության ֆեդերալ ծառայության տվյալներով այս տարվա հուլիսի 31-ին ԱՄՆ-ում կատարվել է 145 գործադուլ։

Ֆաշիստական օրենսդրությունը ԱՄՆ-ում

գնալով իր գագաթնակետին է հասնում, որը
արտահայտվեց 1954 թվականի օգոստոսի
19-ին, կոնգրեսի կողմից կոմունիստական
պարտիան արգելելու վերաբերյալ ընդունած
օրենքում: Կոմունիստական պարտիայի գոր-
ծունեությունը որակելով որպես «հանցավոր
դավադրություն», օրենքը նրան զրկում է քա-
ղաքական պարտիայի իրավունքներից, նրա
բոլոր անդամներին սպառնում է բանտար-
կությամբ և դրամական խոշոր տուգանքով,
եթե Մակկարենի օրենքին համապատասխան
նրանք չգրանցվեն արդարադատության մի-
նիստրությունում:

Կոմունիստական պարտիան արգելող այդ
օրենքը ուղղված է ԱՄՆ-ի ամբողջ առաջա-
դեմ մտքի ու գործիչների դեմ, պրոգրեսիվ
բոլոր կազմակերպությունների ու ընկերու-
թյունների դեմ, բոլոր նրանց դեմ, ովքեր
մտածում ու գործում են Ամերիկայի և ամե-
րիկացիների, խաղաղության ու դեմոկրա-
տիայի համար:

Ամերիկյան ժողովուրդը և համաշխարհա-
յի հասարակական կարծիքը անարգանքի
սյունին են գամում ԱՄՆ-ի մոնոպոլիստա-
կան շրջաններին և նրանց կամքն արտահայ-
տող կոնգրեսին:

Դոցենտ՝ Ա. Դ. ԵՍԱՅԱՆ

---



# ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

(Թվեր և փաստեր)

Բուլղարիան մինչ 1944 թվականի սեպտեմբերի 9-ը աշխարհի հետամնաց երկրներից մեկն էր, որի գրեթե ամբողջ արդյունաբերությունը գտնվում էր օտարերկրյա կապիտալիստների ձեռքում:

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ այժմ Բուլղարիան դարձել է զարգացած ինդուստրիալ-ագրարային երկիր: Բուռն թափով զարգանում է ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը: Այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը:

✪ Եթե 1939 թվականին արդյունաբերության արտադրանքը գյուղատնտեսության արտադրանքի համեմատությամբ կազմում էր 33,8 տոկոս, ապա 1952 թվականին այն հասավ 66,6 տոկոսի:

✪ Արդյունաբերության համախառն արտադրանքը 1953 թվականին 1939 թվականի համեմատությամբ աճել է ավելի քան 5 անգամ, արտադրության միջոցների արտադրությունը՝ 9 անգամ, սպառման միջոցների արտադրությունը՝ ավելի քան 4 անգամ, 1939 թվականի համեմատությամբ մետաղամշակման ար-

դյունաբերությունը աճել է 27 անգամ, փայտամշակման արդյունաբերությունը՝ ավելի քան 5 անգամ, ցելյուլոզի արդյունաբերությունը՝ 4 անգամ, շինանյութերի արդյունաբերությունը 7 անգամ։ Լայն սպառման առարկաների արտադրությունը նախապատերազմյան մակարդակը գերազանցել է 3 անգամ։ Արտադրվել է 3,5 անգամ շատ բամբակյա, 2 անգամ շատ բրդյա գործվածքեղեն, 6 անգամ շատ մետաղյա ամանեղեն։

Արդյունաբերական բանվորների թիվը 1953 թվականին, 1939 թվականի համեմատությամբ, ավելացել է 2,5 անգամ, այդ ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է համարյա 2 անգամ։

Ռեսպուբլիկայում գործում են այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ Լենինի անվան մետաղամշակման կոմբինատը, Ստալինի անվան քիմիական կոմբինատը, Ստալինի և Վիլկո Չերվենկովի անվան ջերմա-էլեկտրակայանները, Վորոշիլովի և Կոլարովի անվան էլեկտրաարդյունաբերական գործարանները, «Մարիցա» մանվածքային ֆաբրիկան, սեպտեմբերի 9-ի անվան կոշիկի գործարանը և այլն։

Բուլղարիայում, ժողովրդական իշխանության գոյության 10 տարում արդյունահանվել է այնքան քարածուխ, որքան արտադրվել է բուրժուական տիրապետության գոյության ընթացքում։ 1953 թվականին ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվել, քան



1930—1939 թվականներին՝ միասին վերցրած։ Բուլղարիայի ծանր արդյունաբերությունը 1952 թվականի 56 օրում տվել է այնքան արտադրանք, որքան արտադրվել է ամբողջ 1939 թվականի ընթացքում։

Երկրում ստեղծվել են մեքենաշինության, նավաշինության, գունավոր և սև մետաղամշակման, քիմիական, էլեկտրաարդյունաբերության, ցելյուլոզի-թղթի արդյունաբերության նոր ճյուղեր։ Միայն առաջին հնգամյակի տարիներին ռեսպուբլիկայում վերակառուցվել են ավելի քան 700 արդյունաբերական ձեռնարկություններ։

Ժողովրդական իշխանության տարիներին զգալի հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսության ասպարեզում։ Բուլղարիայի գյուղացիությունը լիովին համոզվեց, որ կոոպերացիան հանդիսանում է ժողովրդի առատ և կուլտուրական կյանքի ճիշտ ուղին, որը հնարավորություն է տալիս մեխանիզացիայի ենթարկել գյուղատնտեսական աշխատանքները, ավելի լայն մասշտաբներով օգտագործել ագրոտեխնիկական գիտությունը և սովետական հիանալի փորձը։

Ռեսպուբլիկայում կազմակերպված է 2747 աշխատանքային հողագործական կոոպերատիվ տնտեսություն։ Այդ տնտեսություններում միավորվել են գյուղական բնակչության կեսից ավելին և օգտագործում են երկրի մշակվող հողերի 60 տոկոսը։ Գյուղատնտեսության մեջ պետական տնտեսությունների թիվը հասնում է 100-ի։

✪ 1953 թվականին ռեսպուբլիկայում կար 140 մեքենա-տրակտորային կայան։ Երկրի դաշտերում աշխատում էին 14 հազար տրակտոր (վերածած 15 ձիուժի), 1800 կոմբայն, 5814 կալսիչ և այլն։ Ջրովի հողերի տարածությունը 1939 թվականի համեմատությամբ ավելացել է 7 անգամ։ ընդարձակվել է գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունը և բարձրացել բերքատվությունը։ Երկրում հիմնականում լուծված է հացի պրոբլեմը։ 1953 թվականին տեխնիկական կուլտուրաների ընդհանուր արտադրանքը 1939 թվականի համեմատությամբ ավելացել է 58,7 տոկոսով, բամբակի արտադրանքը՝ 435,5 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 343,7 տոկոսով, ծխախոտինը՝ 130,5 տոկոսով։

✪ Առաջին հնգամյակի պլանների կատարումը լուրջ փոփոխություն մտցրեց ժողովրդի նյութական-կուլտուրական կյանքում։ Երկրում ընդմիշտ վերացված է գործազրկությունը, գյուղի աղքատությունը և խավարամտությունը։ Բուլղարիայի գյուղատնտեսությունը կանգնած է սոցիալիզմի լայն և լուսավոր ուղու վրա։ Զգալի չափով աճել է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը և ավելացել գյուղացիների եկամուտը։ Արդյունաբերական բանվորների միջին աշխատավարձը 1939 թվականի համեմատությամբ ավելացել է 38 տոկոսով։

✪ Առաջին հնգամյակի ընթացքում անց է կացվել դրամական ռեֆորմ, վերացվել է քարտային սիստեմը,



հերթականությամբ 4 անգամ կատարվել է գների իջեցում, որի շնորհիվ բնակչությունը շահել է 3 միլիարդ 863 միլիոն լև (100 լևը հավասար է 58 ռուբլի 82 կոպեկի)։

✪ Բուլղարիայի ժողովրդական կառավարությունը մեծ հաջողություններ է ձեռք բերել կուլտուրական, կենցաղային շինարարության, առողջապահության, ժողովրդական կրթության գործում։

✪ Աշխատավորությունը ստանում է ձրի բժշկական օգնություն, արձակուրդի ժամանակ պահպանվում է աշխատավարձը, տարեկան հարյուր հազարավոր աշխատողներ իրենց հանգիստը անց են կացնում պետական և հասարակական կազմակերպությունների առողջարաններում։

✪ Երկրում արագ թափով զարգանում է գիտությունը, արվեստը և գրականությունը։ Լիովին վերացված է անգրագիտությունը. ռեսպուբլիկայի 20 բարձրագույն ուսումնական հաստատությունների 42 ֆակուլտետներում 150 մասնագիտությունների գծով սովորում են 30 հազար ուսանողներ։

---

րի դեմ ուղղված ագրեսիայի բազա դարձնելու վտանգ։ Այդ վտանգն առանձնապես ռեալ դարձավ այն բանից հետո, երբ ԱՄՆ-ի կառավարող շրջանների կողմից Մանիլայում ստեղծվեց գաղութային տերությունների ռազմական նոր բլոկ՝ ուղղված Ասիայի և Խաղաղ օվկիանոսի ժողովուրդների ազատության ու անկախության դեմ։

Ինդոնեզյան շաբաթաթերթ «Սանդի Կուրյեր»-ը վերջերս գրեց, որ իմպերիալիստներն ուզում են Արևմտյան Իրիանը դարձնել երկրորդ Տայվան։ «Ինդոնեզիայի ժողովուրդն ու կառավարությունը,— հայտարարում է «Սանդի կուրյերը»,— պետք է պայքարեն Արևմտյան Իրիանի ազատագրման համար այնպես, ինչպես չին ժողովուրդը և նրա կառավարությունը պայքարում են Տայվանի ազատագրման համար։ Տայվանի և Արևմտյան Իրիանի ազատագրումը կծառայի Ասիայի խաղաղության գործին»։

Ինդոնեզիական ժողովուրդը լի է իր երկրի տերիտորիալ ամբողջականությունը իմպերիալիստների ոտնձգություններից պաշտպանելու վճռականությամբ։

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Մաո Ցզե-դուն— Ընտիր երկեր։ Հատոր առաջին։ 550 էջ, գինը 16 ռ. 15 կ., տիրաժ 5.000։

Վ. Կորոլենկո—«Անլեզու մարդը», 188 էջ, գինը 3 ռ. 50 կ., տիրաժ 10.000։

Հ. Արամյան— «Նեղոսի հովտում», 440 էջ, գինը 8 ռ. 45 կ., տիրաժ 5000։

Մուրացան— «Երկերի ժողովածու»։ Հատոր հինգերորդ, 436 էջ, գինը 8 ռ. 45 կ., տիրաժ 10.000։

Ն. Տիխոնով— «Պատմվածքներ Պակիստանի մասին», 112 էջ, գինը 2 ռ. 20 կ., տիրաժ 5.000։

Ստ. Զորյան— «Գրադարանի աղջիկը», 92 էջ, գինը 2 ռ. 30 կ., տիրաժ 10.000։

Հոուարդ Ֆաստ— «Պիկսքիլ—ԱՄՆ», 132 էջ, գինը 4 ռ. 30 կ., տիրաժ 5.000։

Ա. Մնլիքյան— «Հատուցում», 448 էջ, գինը 7 ռ. 35 կ., տիրաժ 5.000։

Խ. Ա. Երիցյան— «Հորթերի աճեցումը», 136 էջ, գինը 1 ռ. 55 կ., տիրաժ 3.000։

---

Խմբագիր՝ Գր. ՊԵՏՐՈՍՅԱՆ



Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА

№ 20 1954 г.

*ՎՖ 13093* *Պատվեր 863* *Տիրաժ 8000*

*Գլխպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան*
*Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։*